Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

ОБЯЗАТЕЛЬНЫЙ
ЭКЗЕМПЛЯР

№ 8 ԱՊՐԻԼ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ



### ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:*

6817-Վ.2



# ՄԱՅԻՍԻ 1-Ը ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐՆ Է

*Մայիսի 1-ը բոլոր երկրների բանվորների եղբայրության օրն է, աշխատավորների միջազգային համերաշխության օրը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ և անհաղթահարելի ուժի ցուցադրման օրը:*

*Անցել է 68 տարի այն օրվանից, երբ Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Բելգիայի և մյուս երկրների բանվոր դասակարգը առաջին անգամ անցկացրեց միջազգային պրոլետարիատի ռևոլյուցիոն ուժերի մայիսմեկյան ստուգատեսը, որի դրոշների վրա գրված էր «Կոմունիստական մանիֆեստ»-ի բոցաշունչ խոսքերը՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»:*

*Ռուսաստանում մայիսի 1-ը առաջին անգամ տոնվել է 1891 թվականին, Պետերբուրգում:*

*Ամեն տարի Մայիսի 1-ին ամբողջ աշխարհի աշխատավորները ալ դրոշներով,*





4999-58

ռևոլյուցիոն երգերով և մարտական կոչերով դուրս են գալիս փողոց, ցուցադրում իրենց համերաշխությունը, եղբայրությունը և մըշտական պատրաստակամությունը՝ պայքարելու ամեն տեսակ սոցիալական և ազգային ճնշման դեմ, ռեակցիայի սև ուժերի և պատերազմի հրձիգների դեմ, հանուն ազատության, հավասարության և եղբայրության։

Վ. Ի. Լենինը դեռևս 1905 թվականին գրել է, որ Մայիսի 1-ին համայն աշխարհի բանվորները «տոնում են իրենց արթնացումը դեպի լույսն ու գիտությունը, իրենց միավորումը մի եղբայրական միության մեջ՝ պայքարելու համար ընդդեմ ամեն մի կեղեքման, ընդդեմ ամեն մի կամայականության, ընդդեմ ամեն մի շահագործման, հանուն հասարակության սոցիալիստական կառուցման։

...Հրեան ու քրիստոնյան, հայն ու թաթարը, լեհն ու ռուսը, ֆինլանդացին ու շվեդը, լատիշն ու գերմանացին— բոլորը, բոլորը գնում են միասին՝ սոցիալիզմի մեկ ընդհանուր դրոշի ներքո»։

ՍՍՌՄ-ում Մայիսի մեկը, դա ազատ ստեղծագործական աշխատանքի տոն է, ամբողջ աշխարհի աշխատավորության հետ միասին սովետական ժողովրդի համերաշխության և եղբայրության ցույցի օր։ Ամեն



տարի այդ օրը Մոսկվայի Կարմիր հրապարակով, Լենինգրադի Ձմեռային պալատի հրապարակով, Կիևի Կրեշչատիկով, Երևանի Լենինի հրապարակով, միութենական բոլոր ռեսպուբլիկաների մայրաքաղաքների լայն պողոտաներով և հրապարակներով, բոլոր քաղաքների ու ինդուստրիալ կենտրոնների փողոցներով, կոլտնտեսային և սովխոզային ավաններով անցնում են բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի միլիոնավոր շարասյուններ։ Նրանք Հայրենիքին և պարտիային զեկուցում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշումների կենսագործման համար մղվող պայքարում ձեռք բերած փիթխարի նվաճումների, Մայիսի 1-ի առթիվ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման մասին։

Մայիսմեկյան տոնը սովետական ժողովրդի հաշվետվությունն է ամբողջ աշխարհի աշխատավորներին այն մասին, թե ինչպես է հաղթանակած սոցիալիզմի առաջին երկիրը կատարում իր ինտերնացիոնալ պարտքը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հանդեպ, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մի-

լիոնավոր մարտիկների, ամբողջ մարդկության համդեպ։

1957 թվականի մայիսմեկյան տոնակատարությունից հետո անցած մեկ տարում նշանակալից իրադարձություններ են տեղի ունեցել ինչպես մեր Հայրենիքի ներքին կյանքում, այնպես էլ ամբողջ աշխարհում, նոր, հիանալի էջեր են գրվել կոմունիզմի համար մղվող պայքարի տարեգրության մեջ։

Աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի 1-ը սովետական ժողովուրդը նշում է ՍՄԿՊ 20-րդ համագումարի պատմական որոշումների կենսագործման համար համաժողովրդական պայքարի իրագործման մեջ, աշխատավորների քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր հուժկու վերելքի պայմաններում։ Սովետական մարդկանց սրտերը ուրախությամբ ու հպարտությամբ է լցվում, երբ նրանք տեսնում են, թե ինչպիսի լուրջ հաջողություններ է ձեռք բերել մեր երկիրը արդյունաբերության բոլոր ճյուղերի զարգացման, արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցման ուղղությամբ պարտիայի որոշումների կենսագործման ասպարեզում։ Այժմ մեր արդյունաբերու-



թյունը զգալիորեն լավ է աշխատում, ավելի շատ արտադրանք է տալիս, քան երբևէ։

1913 թվականի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքը մեր երկրում ավելացել է 33 անգամ, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը՝ 74 անգամ, իսկ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը ավելի քան 200 անգամ։ Միայն վերջին երկու տարվա ընթացքում արտադրանքի աճը գերազանցում է 1913 թվականի ամբողջ արտադրանքի ծավալը՝ պողպատը մոտ 1,2 անգամ, ածուխը 2,5 անգամ, նավթը մոտ 3 անգամ, ցեմենտը ավելի քան 4 անգամ, էլեկտրաէներգիան՝ 20 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի արտադրության բացարձակ չափերով Սովետական Միությունը արդեն վաղուց շատ առաջ է անցել Եվրոպայի խոշորագույն կապիտալիստական երկրներից՝ Անգլիայից, Ֆրանսիայից, Արևմտյան Գերմանիայից և հաստատակամորեն առաջ է ընթանում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի մակարդակով գլխավոր կապիտալիստական երկրներին հասնելու և առաջ անցնելու խնդրի լուծման ճանապարհով։

խաղաղ տնտեսական մրցության մեջ, ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի լուծման ուղղությամբ, ՍՄԿՊ 20-րդ համագումարի առաջադրանքը կատարելու գործում լուրջ քայլ հանդիսացավ 6-րդ հնգամյակի վճռական տարին՝ 1957 թվականը, որը միաժամանակ հոբելյանական տարի էր մեր ժողովրդի համար՝ Սովետական իշխանության պանծալի 40-ամյակի տարին։

Արդյունաբերական արտադրության ծավալը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, ավելացավ 10 տոկոսով։ Բոլոր միութենական ռեսպուբլիկաները ժամկետից շուտ ավարտեցին 1957 թվականի պետական պլանի կատարումը. ժողովրդական տնտեսության խորհուրդները արդյունաբերության համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարեցին 104 տոկոսով, 1957 թվականի արդյունաբերական արտադրանքը համադրելի գներով զգալիորեն ավելի էր, քան առաջին և երկրորդ հնգամյակների բոլոր տարիներին միասին վերցրած։

Արդյունաբերական արտադրանքի հիմնական տեսակների արտադրությունը 1957 թվականին բնութագրվում է հետևյալ տվյալներով. չուգուն՝ 37 միլիոն տոննա, պող-



պատ՝ 51 միլիոն տոննա, ածուխ՝ 463 միլիոն տոննա, նավթ՝ 98,3 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 209,5 միլիարդ կիլովատտ-ժամ։ Այժմ մենք 12 անգամ ավելի պողպատ ենք արտադրում, քան 1913 թվականին։ Միայն Մագնիտոգորսկի կոմբինատը այժմ 1,5 անգամ ավելի պողպատ է ձուլում, քան ձուլվել էր ամբողջ նախառևոլյուցիոն Ռուսաստանում։

1913—1956 թ.թ. պողպատի արտադրությունը ԱՄՆ-ում ավելացել է 3 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 11,5 անգամ։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանը 2,4 անգամ պակաս էլեկտրաէներգիա է արտադրել, քան Անգլիան, 2,7 անգամ պակաս քան Գերմանիան։ Այժմ Սովետական Միությունը ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան Անգլիան և Արևմտյան Գերմանիան միասին վերցրած։

1957 թ. լրիվ կարողությամբ գործարկվեց աշխարհում ամենախոշոր Կույբիշևի հիդրոկայանը, որը 5 անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրում, քան երկրի բոլոր էլեկտրակայանները՝ 1913 թվականին։ 1957 թվականին խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նոր տեխնիկայի արմատավորման, արտադրության տեխնիկական մակարդակի

բարձրացման ուղղությամբ։ Մեքենաշինական ձեռնարկությունները, գիտահետազոտական ինստիտուտները և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունները մշակեցին ու պատրաստեցին ավելի քան 1.500 տիպի նոր կարևորագույն մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ և ուրիշ սարքավորումներ։ Արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրին ավելի քան 350 նոր տեսակի սարքավորումների, գործիքների ու նյութերի սերիական արտադրությունը։

1957 թվականին ավելի քան 1 միլիոն գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ 2 միլիոնից ավելի առաջարկություններ արեցին։ Ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվեց մոտավորապես մեկ ու կես միլիոն գյուտ, տեխնիկական կատարելագործում և ռացիոնալիզատորական առաջարկություն, որից ստացված խնայողությունը կազմեց մոտ 7 միլիարդ ռուբլի։ Վերջին 2 տարում ժողտնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կազմեց մոտ 400 միլիարդ ռուբլի, որը գերազանցում է նախապատերազմյան բոլոր հնգամյակների կապիտալ ներդրումները միասին վերցրած։

1957 թվականի աշխատանքի արդյունք-



ները լրիվին հաստատում են, որ պարտիայի ու կառավարության միջոցառումները արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու վերաբերյալ միանգամայն ճիշտ էին և ժամանակին։ Արդյունաբերության ղեկավարման վերակառուցումը և արդյունաբերական մինիստրությունների վերացումը բարձրացրեց միութենական ռեսպուբլիկաների պարտիական ու սովետական օրգանների դերը և պատասխանատվությունը ժողովրդական տնտեսության ղեկավարման ասպարեզում, հնարավորություն տվեց հայտնաբերելու և գործողության մեջ դնելու լրացուցիչ նոր ռեսուրսներ նրա բոլոր ճյուղերում, լայն ասպարեզ բացեց բանվորների և արտադրության ղեկավարների նախաձեռնության ու ձեռներեցության համար։

Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականությունը ամբողջ ուժով արտահայտվեց գյուղատնտեսության զարգացման հարցերում։ Վերջին տարիներին պարտիայի Կենտրոնական Կոմիտեն մշակեց և հետևողականորեն իրականացնում է արմատական միջոցառումներ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար։ Այդ միջոցառումներից առանձնապես նշանակալից են

խամ ու խոպան հողերը յուրացնելու պարտիայի համարձակ գիծը, եգիպտացորենի արմատավորումը, գյուղատնտեսության պլանավորման և կոլտնտեսականների վարձատրման նոր կարգը, գյուղատնտեսական մթերքների գնումների և մթերումների գների բարձրացումը, կոլտնտեսությունները, սովխոզները և ՄՏ կայանները մասնագետների որակյալ կադրերով ամրապնդումը և այլն։

Սովետական ժողովուրդը համաժողովրդական պայքար է ծավալել և խոշոր հաջողություններ ձեռք բերել պարտիայի որոշումների կենսագործման ասպարեզում։ Բավական է նշել, որ 1913 թվականի համեմատությամբ մսի ապրանքային արտադրանքը ավելացել է 2 անգամ, կաթինը ավելի քան 3 անգամ, բրդինը ավելի քան 3 անգամ։

36 միլիոն հեկտար նոր հողերի յուրացման շնորհիվ, մեր երկիրը 1956 թվականին ստացավ այնքան հաց, որքան չէր ստացել երբեք։ Չնայած մի շարք շրջաններում օդերևութաբանական անբարենպաստ պայմաններին, անցած տարի կոլտնտեսային գյուղացիության անձնվեր աշխատանքի շնորհիվ մեր երկիրն ապահովվեց բավարար քանակությամբ հացահատիկով և գյուղատն-



տեսական մթերքներով։ Մթերված է մոտավորապես նույնքան հացահատիկ, որքան 1955 թվականին։

Պարտիայի և կառավարության ձեռնարկած խոշոր միջոցառումները ապահովեցին անասնաբուծության վերելքը երկրում։

Առ 1-ը հունվարի 1956 թվականի կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, 1954 թվականի հունվարի 1-ի համեմատությամբ, ավելացել է 10,9 միլիոն գլխով, այդ թվում կովերինը՝ 6,2 միլիոն գլխով, խոզերինը՝ 11 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 20,3 միլիոն գլխով։

1957 թվականին ծնունդ առավ բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու հայրենասիրական շարժումը, որը վերածվեց իսկական, համաժողովրդական, միլիոնավոր մարդկանց ընդգրկող մրցության։ Կոլտնտեսային գյուղացիությունը պատվով է կատարում իր խոստումը։ Արդեն շատ կոլտնտեսություններ, սովխոզներ, ամբողջ շրջաններ կատարել են հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարին 100 և ավելի ցենտներ միս և 400—500 ցենտներ կաթ ստանալու իրենց

պարտավորությունները։ Կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և գյուղատնտեսական մասնագետների անձնվեր աշխատանքի շնորհիվ հաջողությամբ լուծվում է ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան (1955 թվականի) պլենումի առաջադրած խնդիրը՝ 1954 թվականի համեմատությամբ ամբողջ երկրում 1960 թվականին կաթի արտադրությունը 2 անգամ ավելացնելու վերաբերյալ։ Կաթի արտադրությունը վերջին 3 տարում ավելացել է համարյա 2 անգամ։

Հունվարյան պլենումը խնդիր դրեց 6 տարում, այսինքն 1960 թվականին կոլտնտեսություններում մեկ կովի միջին կաթնատվությունը ավելացնել՝ հասցնել առնվազն 1.700 կիլոգրամի։ Անցած 3 տարում միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում բարձրացավ 766 կիլոգրամով և 1957 թվականին կազմեց 1.858 կիլոգրամ։ Այսպիսով պարտիայի առաջադրանքը գերազանցումով կատարվեց ոչ թե 6, այլ 3 տարում։

Ներկայումս կաթի արտադրությունը մեր երկրում հասել է ԱՄՆ-ում կաթի արտադրության մոտ 95 տոկոսին, իսկ յուղի ընդհանուր արտադրությունն ՍՍՌՄ-ում անցյալ տարի արդեն որոշ չափով գերազանցեց ԱՄՆ-ին։ Այս բոլորը մեզ լիակատար վըս-



տահություն են տալիս, ասելու, որ բնակչության մեկ շնչին ընկնող կաթի արտադրությամբ մենք բոլոր հնարավորությունները ունենք արդեն 1958 թվականին ԱՄՆ-ին հասնելու համար։

Գյուղատնտեսության հետագա զարգացման գործում նոր փայլուն հեռանկարներ են բացում պարտիայի վերջին միջոցառումները։ Ինչպես հայտնի է ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվարյան պլենումը որոշում ընդունեց «Կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդման և ՄՏ կայանները վերակազմելու մասին» և ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկում կազմակերպել։ Համաժողովրդական քննարկման ընթացքում Փետրվարյան պլենումի որոշումները արժանացան ամբողջ սովետական ժողովրդի միահամուռ հավանությանը և ջերմ պաշտպանությանը։

Արտահայտելով սովետական ժողովրդի կամքը ՍՍՌՄ Գերագույն Սովետը հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի մշակած և համաժողովրդական քննարկման ընթացքում ընդհանուր պաշտպանություն գտած՝ կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մե-

քենա-տրակտորային կայանները վերակազմելու միջոցառումներին։ Մեքենա-տրակտորային կայանները պատմական մեծագույն դեր են խաղացել մեր երկրի գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման գործում, կոլտնտեսային կարգի ստեղծման և ամրապնդման ճանապարհին։

Վերջին տարիներին գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի որոշումների իրականացման շնորհիվ մեր կոլտնտեսությունները մեծ մասամբ դարձել են խոշոր, տնտեսապես ամուր հանրային տնտեսություններ, որոնք միլիոնավոր ռուբլիների եկամուտներ են ստանում և ունեն ղեկավարների, մասնագետների և մեխանիզատորների փորձված կադրեր։

Ի տարբերություն անցյալի, կոլտնտեսությունները որպես կանոն, այժմ ՄՏ կայանների կողմից ղեկավարման կարիքը չեն զգում և ունեն հանրային խոշոր արտադրություն վարելու սեփական հարուստ փորձ։ Ավելին, ՄՏ կայանների կողմից կոլտնտեսությունների աշխատանքի կանոնարկումը շատ դեպքերում արդեն սկսել էր արգելակել նրանց զարգացումը, նրանց ռեզերվների օգտագործումը, կասեցնել կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների ստեղծա-



գործական նախաձեռնությունն ու ակտիվությունը։

Ստեղծված իրադրությունը պահանջում էր լուրջ փոփոխություններ մտցնել կոլտնտեսությունների արտադրա-տեխնիկական սպասարկման ձևերի մեջ։ Այժմ արդեն կոլտնտեսությունների մեծամասնությունը կարող է ինքնուրույնաբար վարել տնտեսությունը, ձեռք բերել տեխնիկա, և որ կարևորն է, ճիշտ օգտագործել այն։

Պարտիայի այդ միջոցառումը հնարավորություն կտա ավելի նպատակահարմար օգտագործել տեխնիկան և մեխանիզատորների կադրերը, ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, է՛լ ավելի բարձրացնել կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները։ Կուժեղացնի քաղաքի և գյուղի կապերը, է՛լ ավելի կամրապնդի բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, սոցիալիստական արտադրական հարաբերությունները գյուղում կթևակոխեն իրենց զարգացման նոր, ավելի հասուն փուլը։

ՍՄԿԿ 20-րդ համագումարի որոշումներին համապատասխան պարտիան և կառավարությունը իրագործում են սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և

կուլտուրական մակարդակի հետագա բարձ-
րացման նպատակին ուղղված մի ամբողջ
շարք միջոցառումներ։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման
առավել ընդհանրացող ցուցանիշը ազգային
եկամտի աճն է։ Բնակչության մեկ շնչի հաշ-
վով այն 1913 թվականի համեմատությամբ
ավելացել է. ՍՍՌՄ-ում՝ 14 անգամ, իսկ
ԱՄՆ-ում՝ 2 անգամից էլ պակաս, Անգլիա-
յում և Ֆրանսիայում՝ մոտ 1,6 անգամ։

Սովետական ժողովուրդը մեծ ոգևորու-
թյամբ դիմավորեց կենսաթոշակների վերա-
բերյալ Օրենքը։ 1957 թվականին բնակչու-
թյունը ստացել է 57,9 միլիարդ ռուբլի գու-
մարով կենսաթոշակներ, կամ 21,4 միլիարդ
ռուբլով ավելի, քան 1956 թվականին։ Ավե-
լացել և 112 օրվա է հասցվել հղիության
ու ծննդաբերության շրջանում կանանց
տրվող արձակուրդների ժամկետը։ 1957
թվականի հունվարի 1-ից բարձրացվել է
ցածր վարձատրվող բանվորների և ծառա-
յողների աշխատավարձը, վերացվել է ուս-
ման վարձը դպրոցներում և բարձրագույն
ուսումնական հաստատություններում, դա-
դարեցվել է փոխառության հետագա բաժ-
նեգրությունը և այլն։



Կոլտնտեսությունների և ռոլխոզների
ապրանքային արտադրության աճը թույլ
տվեց 1958 թվականից վերացնել կոլտնտե-
սականների, բանվորների և ծառայողների
տնտեսությունների կողմից պետությանը
գյուղատնտեսական մթերքների պարտադիր
հանձնումները, որի հաշվին նրանք տարե-
կան կշահեն ավելի քան 3 միլիարդ ռուբ-
լի։

Պետությանը հանձնած և վաճառած ար-
տադրանքի գների բարձրացման և նրա ծա-
վալի աճման հաշվին կոլտնտեսությունների
և բնակչության եկամուտները 1952 թվա-
կանից մինչև 1957 թվականը ավելացել են
64 միլիարդ ռուբլով։

Պետական ու կոոպերատիվ առևտրի ման-
րածախ ապրանքաշրջանառության ընդհա-
նուր ծավալը 1957 թվականին կազմում է
616,5 միլիարդ ռուբլի և 1956 թվականի հա-
մեմատությամբ աճեց 14 տոկոսով, տարե-
կան պլանով նախատեսված 10 տոկոս աճի
դիմաց։ 1957 թվականին բնակչությանը վա-
ճառվել է պլանով նախատեսվածից 19,5
միլիարդ ռուբլով ավելի ապրանք, իսկ 1956
թվականի համեմատությամբ, 25,7 միլիարդ
ռուբլով ավելի։

4999-Ն



Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել մեր երկրում բնակարանային շինարարության ասպարեզում։ Բավական է նշել, որ միայն 1957 թվականին շահագործման հանձնվեցին ավելի քան 48 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Կոլտնտեսականները և ինտելիգենցիան կառուցել են 770 հազար բնակելի տուն։ 1958 թվականին կկառուցվի և կբնակեցվի 61 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն, կոլտնտեսականների և ինտելիգենտների ուժերով կկառուցվի 800 հազար տուն։ Ինչպես տեսնում ենք բնակարանային շինարարության չափերը վիթխարի են և աճում են տարեցտարի։ Բայց դա մեզ չի կարող բավարարել։ Ահա թե ինչու անցյալ տարի ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը խնդիր դրեցին կարճ ժամկետում հասնել բնակարնային ֆոնդի զգալի աճման, որպեսզի մոտակա 10—12 տարում վերացվի բնակարնային պակասը մեր երկրում։

Մեր երկիրը մեծ հաջողություններ է ձեռք բերել կուլտուրական շինարարության բնագավառում։

Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեր երկրի բնակչության 3/4-ը անգրագետ էր։ Սո-



վետական իշխանությունը աշխատավոր մասսաների համար լայն ճնապարհ բացեց դեպի լուսավորությունը և գիտությունը։ Ներկայումս մեր Հայրենիքը ժողովրդական լուսավորության դրվածքով համարվում է ամենաառաջավոր երկիրը, ուր սովորողների թիվը 50 միլիոն մարդուց ավելի է, այլ կերպ ասած, ներկայումս սովետական յուրաքանչյուր 4 մարդուց մեկը սովորում է։

Նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ 1—4 դասարաններում սովորողների թիվն ավելացել է 1,8 անգամ, 5—10-րդ դասարանների աշակերտների թիվը՝ 23 անգամ, տեխնիկումներում սովորողներինը՝ 37 անգամ, բուհերում սովորողների թիվը՝ մոտ 16 անգամ։

Այժմ մեր երկրի բուհերում և տեխնիկումներում սովորում են ավելի քան 4 միլիոն մարդ։ Միայն 1957 թվականին բուհերն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները տվել են ավելի քան 770 հազար մասնագետներ։ Գիտական հիմնարկությունների թիվը 1914 թվականի 289-ից, 1957 թվականին հասել է մոտ 3000-ի, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիան միավորում է 120-ից ավելի գիտահե-

տաղտական հիմնարկներ։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում հաշվվում էր 10 հազար գիտաշխատող, իսկ այժմ նրանց թիվը անցել է 250 հազարից, որից 96 հազարը գիտության դոկտոր ու թեկնածուներ են։ Միայն միջինասիական 4 ռեսպուբլիկաների գիտությունների ակադեմիաներում ավելի շատ գիտական աշխատողներ կան, քան եղել է ամբողջ ցարական Ռուսաստանում։

Սովետական մարդկանց անչափ ուրախացնում և նրանց սրտերը հպարտությամբ է լցնում մեր գիտնականների, ինժեներների, տեխնիկների, բանվորների խոշորագույն ներդրումը համաշխարհային գիտության տեխնիկայի և կուլտուրայի գանձարանը։ Հենց միայն վերջին տարիներին մեր երկրում կառուցվեց աշխարհի առաջին ատոմային էլեկտրակայանը, ստեղծվեց աշխարհում առաջին սովետական հզոր միջմայրցամաքային բալիստիկ հրթիռը, գործարկվեց «տարրական մասնիկների» աշխարհի ամենախոշոր արագացուցիչը՝ ատոմի միջուկի ամենաբարդ պրոցեսներն ուսումնասիրելու համար, մենք առաջինը յուրացրեցինք գերարագ ռեակտիվ և տուրբապտուտակավոր մարդատար ինքնաթիռների արտադրությու-



նը. շրջարկեցինք առաջին ատոմային սառցահատը։

Սովետական գիտնականները և ինժեներները խոշորագույն հայտնագործություններ արեցին էլեկտրոնիկայի, տելեմեխանիկայի, կիսահաղորդիչների ֆիզիկայի ասպարեզում և գիտության ու տեխնիկայի բազմաթիվ ուրիշ ճյուղերում։ 1957 թվականը մարդկության պատմության մեջ մտավ որպես երկրի սովետական առաջին արհեստական արբանյակների տիեզերք արձակելու տարի։ Արբանյակների արձակումը գիտության ու տեխնիկայի զարգացման նոր դարաշրջանի սկիզբ դրեց։ Այժմ նույնիսկ հակառակորդներն են խոստովանում, որ գիտության ու տեխնիկայի զարգացմամբ, մասնագետների բարձր որակավորում ունեցող կադրերի առկայությամբ Սովետական Միությունը աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը։

Անգլիական հայտնի իրավաբան Դ. Պրիտը գրում է. «Նայեցեք Սովետական Միությանը և նրա ժողովուրդներին այսօր. սկսելով համարյա ոչնչից, նրանք բազմաթիվ բնագավառներում գագաթին են հասել...

Գիտության և կուլտուրայի բնագավառում, քաղաքում թե գյուղում, օդում, անգամ

ջրում նրանք հասել են մեծ հաջողությունների, որոնք անընդհատ աճում են։ Իսկ նրանք ինչեր պիտի անեն հետագա 40 տարում։ Մեզ մնում է պարզապես գնալ այդ նույն ուղիով։ Այդ ուղու վրա բոլորի համար տեղ կլինի»։

Սոցիալիզմն առատ պտուղներ է բերել մեր ժողովրդին, բայց էլ ավելի հոյակապ է մեր ապագան։ Կոմունիստական պարտիան ամենայն հաստատակամությամբ պայքարում է սոցիալիստական արդյունաբերության բոլոր ճյուղերի հետագա հզոր վերելքի համար, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ կապիտալիստական խոշորագույն երկրներին հասնելու և անցնելու՝ ՍՍՌՄ գլխավոր տնտեսական խնդրի լուծման համար։

Առաջիկա 15 տարում ինդուստրիայի վրճռական ճյուղերի աճը մոտ 2—3 անգամ, գյուղատնտեսության բազմակողմանի զարգացումը հնարավորություն կտան զգալիորեն բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը ,հասնել սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման։

Մայիսի մեկը արդյունաբերության, գյու-



ղատնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառում ձեռք բերած հաջողություններով է դիմավորում նաև վերածնված հայ ժողովուրդը։ Այդ հաջողությունները, ինչպես նշվեց ՀԿՊ 19-րդ համագումարում, պարտիայի և կառավարության ամենօրյա հոգատարության, լենինյան ազգային քաղաքականության կիրառման, ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների բարեկամության ու համագործակցության արդյունքն են։ Գոհունակությամբ պետք է նշել, որ ռեսպուբլիկայի աշխատավորները պատվով են կատարում 6-րդ հնգամյա պլանի առաջադրանքները, առաջ մղելով ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ճյուղերի զարգացումը։ Առանձնապես նշանակալից են արդյունաբերության բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ Ամբողջությամբ վերցրած ռեսպուբլիկայում համախառն արտադրանքի 1957 թվականի թողարկման պետական պլանը գերակատարված է ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 23-ին, իսկ ժողտնտխորհի ձեռնարկությունների կողմից՝ դեկտեմբերի 22-ին։ Արդյունաբերության արտադրանքը 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճել է 20 տոկոսով։ Արտադրության տեխնիկական

մակարդակի բարձրացման շնորհիվ յուրացվել է մոտ 100 տեսակ արտադրանքի թողարկում։ Վերջին երկու տարում շահագործման է հանձնվել ավելի քան 30 նոր արտադրական ձեռնարկություն, այդ թվում էլեկտրաապարատների, սարքաշինական, կոմբինացված կերի գործարանները, տեքստիլ, «Կարմիր ջուլհակ», ոսկերչական, գլխարկների ֆաբրիկաները։ Արագորեն սկսել է զարգանալ ժամանակակից գործիքաշինությունը և ավտոմատացման միջոցների արտադրությունը, կառուցվել են «Ավտոմատիկա», «Պրոմպրիբոր» գործարանները, ինչպես նաև մի շարք գիտահետազոտական ինստիտուտներ և ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոներ։

Իրագործելով գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի վերաբերյալ պարտիայի մշակած ծրագիրը, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները հասել են գյուղատնտեսության մի շարք ճյուղերի հետամնացության վերացման և գյուղատնտեսական կուլտուրաների հիմնական տեսակների համախառն արտադրանքի և բերքատվության նկատելի ավելացման։ 1956 թվականի համեմատությամբ 1957 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքը



ավելացել է 34 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 16 տոկոսով, ծխախոտինը՝ 12 տոկոսով։ Պետությանը հանձնված է 25 տոկոսով ավելի կարտոֆիլ, 19 տոկոսով ավելի բանջարեղեն և ծխախոտ և 15 տոկոսով ավելի շաքարի ճակնդեղ, քան 1956 թվականին։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 55,2 հազար գլխով, այդ թվում՝ կովերինը՝ 28,2 հազար գլխով, խոզերինը՝ 16,1 հազար գլխով, ոչխարներինը՝ 237,2 հազար գլխով, 1957 թվականին կաթի արտադրությունը ավելացել է 11 տոկոսով, բրդինը՝ 10 տոկոսով, ձվինը՝ 2 տոկոսով։ Պետությանը 1957 թվականին հանձնվել է 18 տոկոսով ավելի կաթ, 27 տոկոսով ավելի ձու, 19 տոկոսով ավելի բուրդ, քան 1956 թվականին։ Այս բոլորի շնորհիվ ավելացել է գյուղատնտեսական մթերքների մթերումների ծավալը, աճել են կոլտնտեսականների դրամական եկամուտները, բարձրացել է կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պայքարում են մոտակա տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու խնդրի լուծման համար։ Մենք ու-

նինք շատ կոլտնտեսություններ, որոնք արդեն կատարել են 1960 թվականի համար ստանձնած պարտավորությունները։

Մեծ են հայ ժողովրդի նվաճումները կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Ռեսպուբլիկայի բոլոր տեսակի հանրակրթական դպրոցներում 1957—1958 ուսումնական տարում սովորում է ավելի քան 300 հազար մարդ։ 1957 թվականին բուհերում սովորում էր ավելի քան 21 հազար ուսանող, տեխնիկումներում և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ ավելի քան 13 հազար մարդ, բուհերը և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները 1957 թվականին տվեցին ավելի քան 7,5 հազար երիտասարդ մասնագետներ։ Ռեսպուբլիկայում գիտական և գիտա-մանկավարժական գործունեությամբ զբաղվում են մոտ 3.000 գիտաշխատողներ։

Բնակչության 10 հազար հոգուն ընկնում է. Թուրքիայում՝ 12, Պակիստանում՝ 8, Իրանում՝ 4 ուսանող, իսկ Հայկական ՍՍՌ-ում՝ 118 ուսանող,բժիշկներ՝ Թուրքիայում՝ 3, Պակիստանում՝ 0,7, Իրանում՝ 1, Հայաստանում՝ 22 հոգի։ 1956 թվականին Սովետական Հայաստանում բնակչության 1000



հոգուն ընկնում էր 38 նորածին, որը 4 անգամ ավելի է, քան Ֆրանսիայում, 2 անգամ ավելի քան Անգլիայում, Արևմտյան Գերմանիայում և Բելգիայում։

Էլ ավելի հոյակապ են ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարները։ Գունավոր մետաղների արտադրությունը առաջիկա 6—7 տարում ավելանալու է 3 անգամ, մեքենաշինությունը՝ 4 անգամ։ Սովետական Հայաստանը կդառնա Միության պրիբորաշինության հիմնական օջախներից մեկը։ Մեծ ուշադրություն է դարձվում քիմիական արդյունաբերության զարգացմանը, առանձնապես սինթետիկ թելի, պլաստմասսայի և սինթետիկ կաշվի արտադրության ստեղծմանը։ Արդյունաբերության և բնակչության կենցաղային կարիքների բավարարման գործում բացառիկ կարևոր նշանակություն ունի Ղարադաղ—Աղստաֆա—Երևան գազամուղի կառուցումը, որը նախատեսված է ավարտել 1960 թվականին։

Մոտակա տարիներին ծրագրվում է մեր ռեսպուբլիկայում կառուցել ջերմաէլեկտրակայան, որը հնարավորություն կտա կարգավորելու Սևանա լճի ջրերի օգտագործումը

և կարագացնի Սևան—Հրազդան կասկադի անցումը իրիգացիոն գրաֆիկի։

Գյուղատնտեսության բնագավառում նախատեսվում է 2,5 անգամ ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը. խաղողի և մրգերի արտադրությունն ավելանալու է 3—4 անգամ։

Հայ ժողովրդի, ինչպես նաև սովետական բազմազգ ժողովուրդների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացումը Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության խոշորագույն հաղթանակն է։

ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը սովետական բազմազգ պետության հզորության և անպարտելիության հիմքն է, կոմունիստական շինարարության նորանոր հաջողությունների երաշխիքը։



Ամբողջ աշխարհի աշխատավորների համերաշխության օրը՝ Մայիսի 1-ը սոցիալիզմի երկրների միասնության ու համերաշխության հետագա ամրապնդման, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման աչքի ընկնող հաղթանակների, ռեակցիայի և պատերազմի ուժերի դեմ, խաղաղության ու առաջադիմության ուժերի նոր հաջողությունների իրադրության մեջ են



նշում սոցիալիզմի լագերի բոլոր երկրների աշխատավորները։

Սոցիալիզմի լագերի երկրները 1957 թվականը ավարտեցին խոշորագույն հաղթանակներով։ 1957 թվականը Ժողովրդական Չինաստանի համար առաջին հնգամյակի վերջին տարին էր. Չին ժողովուրդը մեծ խանդավառությամբ հնգամյակը կատարեց 4 տարում, ստեղծելով երկրի սոցիալիստական ինդուստրացման ամուր հիմքը։ Հնգամյակի տարիներին շահագործման է հանձնվել 519 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, իսկ արդյունաբերության արտադրության տարեկան միջին աճը կազմեց 18,8 տոկոս։ Դա անհասանելի տեմպ է կապիտալիստական ամեն մի երկրի համար։ ՉԺՌ կազմվելու պահից ի վեր արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է գրեթե 6 անգամ։

Մեծ են նաև սոցիալիստական մյուս երկրների հաջողությունները։ Միմիայն 1957 թվականին Չեխոսլովակիայում՝ արդյունաբերական արտադրանքի աճը կազմեց 10,2 տոկոս։ Լեհաստանում՝ 9,6 տոկոս։ Արդյունաբերությունը արագ տեմպերով աճում է նաև ԳԴՌ-ում, Բուլղարիայում, Ռումինիայում, Ալբանիայում, ԿԺԴՌ-ում, ՄԺՌ-ում,

ՎԴՌ-ում, ինչպես նաև Հարավսլավիայում։ Պատերազմից հետո սոցիալիզմի ուղին թևակոխած բոլոր երկրները մինչև պատերազմն արտադրում էին 30 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ 1957 թվականին՝ 117 միլիարդ կիլովատ-ժամ, պատերազմից առաջ ձուլում էին 6,6 միլիոն տոննա պողպատ, այժմ՝ 22,5 միլիոն տոննա, տալիս էին 240 միլիոն տոննա քարածուխ, իսկ այժմ տալիս են 593 միլիոն տոննա։ Նշանակալից են սոցիալիստական երկրների հաջողությունները՝ սոցիալիզմի հիմունքներով գյուղատնտեսության վերափոխման գործում։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան արդեն ավարտել է գյուղատնտեսական կոոպերացումը, Բուլղարիայի գյուղատնտեսության մեջ սոցիալիստական սեկտորը գրավում է մշակվող հողերի 87 տոկոսը, Չեխոսլովակիայում՝ հողատարածության 60 տոկոսը, Ռումինիայում՝ գյուղատնտեսական բոլոր հողատարածությունների ավելի քան 42 տոկոսը և այլն։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բարձր զարգացած ինդուստրիալ բազայի առկայության շնորհիվ սոցիալիստական երկրները հնարավորություն ունեն արագորեն



զարգացնելու իրենց էկոնոմիկան, անշեղորեն բարձրացնելու աշխատավորների կենսամակարդակը։ Սոցիալիստական երկրների հսկայական հաջողությունները ուրախությամբ են համակում սովետական մարդկանց, սոցիալիզմի բոլոր բարեկամների սրտերը։

Սոցիալիզմի բոլոր երկրները, թե մեծ, թե փոքր, լիովին իրավահավասար երկրներ են, նրանցից ոչ մեկը որևէ առավելություն կամ արտոնություն չունի։ Սոցիալիստական մեկ երկրի փորձը դառնում է մյուսի սեփականությունը, յուրաքանչյուր երկրի հաջողությունները ամրապնդում են ոչ միայն այդ երկիրը, այլև ամբողջ սոցիալիզմի լագերը։

Սոցիալիզմի լագերի երկրներում սոցիալիստական հաղթական շինարարության, կոմունիզմի ուղիով մեր երկրի հաջող առաջընթացի շահերը պահանջում են ամրապնդել այդ երկրների տնտեսական, քաղաքական, կուլտուրական համագործակցությունը, եղբայրական կապերը կոմունիստական ու բանվորական պարտիաների միջև, փորձի փոխանակումը և այլն։

1957 թվականի նոյեմբերին Մոսկվայում հրավիրվեց կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 2

խորհրդակցության, որտեղ քննվեցին խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում կոմունիստների կարևորագույն խնդիրները ժամանակակից էտապում։ Խորհրդակցություններում միահամուռ ընդունված Դեկլարացիան և Մանիֆեստը նշանավորեցին միջազգային կոմունիստական շարժման խոշորագույն հաջողությունը, նրա գաղափարական և քաղաքական հաղթանակը։

Այդ փաստաթղթերի նշանակությունն է՛լ ավելի է մեծանում նաև այն բանի համար, որ ինչպես հայտնի է, միջազգային ռեակցիան վերջին շրջանում քիչ ջանքեր չգործադրեց կոմունիստական շարժումը ջլատելու, նրա շարքերում խառնաշփոթություն առաջ բերելու համար։ Հակառակ ռեակցիայի բոլոր հաշիվներին, խորհրդակցությունները համոզեցուցիչ կերպով ցույց տվեցին սոցիալիստական լագերի հետագա համախմբվածությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարական հիմքի վրա, կոմունիստական պարտիաների կապերի հետագա ամրապնդումը։

Խորհրդակցության փաստաթղթերում որպես առաջնակարգ խնդիր առաջ է քաշվում ատոմային և ջրածնային զենքի փորձարկումների անհապաղ դադարեցումը և այդ



զենքի արտադրության արգելումը։ Դեկլարացիայում ասված է, որ կոմունիստական պարտիաները խաղաղության համար մղվող պայքարը համարում են իրենց առաջնակարգ խնդիրը և կանեն իրենցից կախված ամեն բան պատերազմը կանխելու համար։

Դեկլարացիայում հաստատվեց կոմունիստական և բանվորական պարտիաների հայացքների միասնությունը սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության արմատական հարցերում։

Մոսկվայի խորհրդակցությունները ամբողջ ուժով ընդգծեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա համայն աշխարհի բանվորների ինտերնացիոնալ համախմբման անհրաժեշտությունը, մեկ անգամ ևս ցուցադրելով 53 տարի առաջ մեծ Լենինի խոսքերի իմաստունությունը, որ «բոլոր բանվորները եղբայրներ են, և նրանց ամուր միասնության մեջ է ամբողջ աշխատավոր և կեղեքված մարդկության բարօրության ու երջանկության միակ երաշխիքը»։

Սովետական մարդիկ, ինչպես նաև մյուս բոլոր երկրների աշխատավորները ջերմորեն հավանություն տվեցին Մոսկվայի խորհրդակցությունների փաստաթղթերին և դրանք

դարձրին իրենց գործունեության ուղեցույցը:

ՍՍՌՄ և սոցիալիզմի լագերի երկրների հաջողությունները հսկայական ներգործություն են ունենում գաղութային երկրների ազգային-ազատագրական շարժումների վրա:

Վերջին 12 տարում ՉԺՌ-ից, ԿԺԴՌ-ից և ՎԴՌ-ից բացի, գաղութակալության ամոթալի լուծը թոթափել են 700 միլիոն մարդ և ստեղծել իրենց ազգային պետությունները: Նախկին գաղութային ու կախյալ երկրների տերիտորիաների վրա հետպատերազմյան շրջանում հանդես են եկել 25 սուվերեն պետություններ, գաղութային ճնշման տակ են մնում միայն 160 միլիոն մարդ:

Արևելքի ժողովուրդների կյանքի և գիտակցության մեջ տեղի ունեցած այդ վիթխարի փոփոխությունները արտացոլվեցին Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության կոնֆերենցիայում, որը տեղի ունեցավ 1957 թվականին: Կահիրեից նորից հնչեց արթնացած Արևելքի ժողովուրդների հզոր ձայնը, նրա ատելությունը իմպերիալիզմի, նրա զավթողական, գաղութարարական քաղաքականության նկատմամբ:

Գաղութարարների և նրանց գործակալների բոլոր փորձերը, որոնք նպատակ ունեին



խանգարել Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համախմբմանը, ձախողվեցին, Կահիրեի կոնֆերենցիան վերածվեց այդ ժողովուրդների միասնության հուժկու ցույցի: Ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդները, առաջադեմ մարդիկ ջերմորեն ողջունեցին Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծումը, որը ամրապնդում է հակաիմպերիալիստական ուժերը Արևելքում, նպաստում է խաղաղության համար մղվող պայքարին:

Ամբողջ աշխարհի հասարակայնությունը իր համերաշխությունն է հայտնում Ալժիրի, Թունիսի, ինչպես նաև Ասիայի ու Աֆրիկայի ազատության ձգտող մյուս ժողովուրդների պայքարին:

Ի հակադրություն սոցիալիզմի լագերի, որտեղ բոլոր հնարավորություններն ստեղծված են աշխատավորության բարեկեցության բարձրացման համար, կապիտալիզմի աշխարհում սովը, թշվառությունը, գործազրկությունը հարկային ծանր բեռը, անվստահությունը վաղվա օրվա նկատմամբ աշխատանքի մարդու մշտական ուղեկիցն են:

Սպառազինությունների մրցավազքի ամբողջ ծանրությունն ընկած է աշխատավորության ուսերին, չէ՞ որ դրանով մի խումբ

մոնոպոլիստներ միլիարդներ են դիզում։ Եթե 1939 թվականին կապիտալիստական կորպորացիաները ստացել են 6,4 միլիարդ դոլար շահույթ, ապա 1957 թվականին նրանք գրպանեցին ավելի քան 42 միլիարդ դոլար։ ԱՄՆ-ի ռազմական ծախսերը խժռում են պետական բյուջեի 77 տոկոսը, իսկ հարկերն աճում են տարեցտարի։ Տրումենի օրոք 342 միլիարդ դոլար հարկ է հավաքվել։ Այժմյան կառավարությունը նկատի ունի (1959 թվականը ներառյալ) հավաքել 474 միլիարդ դոլար։ Այժմ ԱՄՆ-ում հարկերը խլում են ընտանիքի եկամուտների $1/_3$-ը։

Գործազրկությունը ուրվականի նման հետևում է աշխատավորությանը։ Աշխատանքի միջազգային կազմակերպության վերջերս հրապարակած զեկուցման մեջ նշված է, որ վերջին տարում լրիվ գործազուրկների թիվը ավելացել է՝ Կանադայում և Հոլանդիայում ավելի քան 2 անգամ, Շվեդիայում՝ 43 տոկոսով, Բելգիայում՝ 34 տոկոսով, ԱՄՆ-ում՝ 24 տոկոսով, Անգլիայում և Շվեդիայում՝ 18 տոկոսով։

«Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը 1958 թվականի մարտի 8-ին գրել է, որ փետրվարին լրիվ գործազուրկների թիվը



ԱՄՆ-ում ամենաբարձրն է եղել վերջին 16 տարում և հասել է 5,2 միլիոն մարդու։

Գործազուրկների թիվը Անգլիայում աշխատանքի մինիստրության հաղորդման համաձայն, փետրվարին հասել է 472 հազարի։ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում հաշվվում է 1.432 հազար գործազուրկ։ Հունվարին գործազուրկների թիվը հասնում էր Բելգիայում՝ 230 հազարի, Հոլանդիայում՝ 130 հազարի, Դանիայում՝ 148 հազարի, Չիլիում՝ 170 հազարի, Ճապոնիայում՝ կես միլիոնի, Իտալիայում՝ 1,8 միլիոնի։

Այսպիսով, մոնոպոլիաների հարձակումը հանդիպում է բանվոր դասակարգի գնալով ավելի կազմակերպված հակահարվածին։ Բանվորական շարժման տարբերիչ գիծը՝ նրա մասսայական լինելը, համախմբվածությունն է, գործադուլների երկարատևությունը, որոնք հաճախ համազգային բնույթ են ընդունում։ Միայն 1957 թվականի առաջին կեսին Անգլիայում գործադուլ են արել 200 նավաշինարարներ, 1,5 միլիոն մեքենաշինարարական բանվորներ։ Ձեռնարկատերերը հարկադրված եղան մասնակի զիջումներ անել և աշխատավարձը բարձրացնել շաբաթական 10—11 շիլինգով։

*Ֆրանսիայում բանվորներից բացի 1957 թվականին գործադուլ արեցին բուհերի դասախոսներն ու ուսանողները, պետական ծառայողները։ Ավելի հզոր ելույթներից են էլեկտրատեխնիկական և գազային արդյունաբերության աշխատողների հոկտեմբերյան համընդհանուր գործադուլը, երկաթուղային տրանսպորտի, մետրոյի, փոստի, հեռախոս-հեռագրի, կոմունալ ծառայության քաղաքացիական ավիացիայի բանվորների համազգային գործադուլը։*

*Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների օրինակը վառ կերպով ցույց է տալիս ամբողջ աշխարհի աշխատավորներին, որ կյանքի վճռական բարելավման կարող է հասնել միայն այն ժողովուրդը, որն ազատ է շահագործումից և ստրկացումից։*

***

*Մայիսմեկյան տոնը սովետական ժողովուրդը դիմավորում է մեր Հայրենիքի միջազգային հեղինակության հետագա ամրապնդման, խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում նրա նորանոր հաջողությունների պայմաններում։ Հենվելով իր անընդհատ աճող հզորության վրա, սոցիալիստական լագերի ու-*



*ժի և միաձույլ համախմբվածության ամբողջ աշխարհի ժողովուրդների ակտիվ աջակցության վրա, Սովետական Միությունը հետևողական պայքար է մղում խաղաղության ու ժողովուրդների անվտանգության պահպանման համար։*

*Սովետական Միությունը ելնելով խաղաղության ամրապնդման շահերից անշեղորեն հանդես է գալիս ընդհանուր զինաթափման օգտին, միջուկային զենքի արգելման, ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումների անհապաղ դադարեցման և ռազմական բլոկների և բազաների, «սառը պատերազմի» վերացման օգտին։ Միջազգային լարվածությունը թուլացնելու և վստահության մթնոլորտ ստեղծելու Սովետական Միության անկեղծ ձգտումների համոզիչ վկայությունը վերջին երեք տարում ՍՍՌՄ Զինված ուժերի կրճատումն է 2 միլիոն 140 հազար մարդով։*

*Ամբողջ մարդկությանը հուզող ամենահրատապ հարցը հանդիսանում է ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումների դադարեցման հարցը։ Բոլորին է հայտնի, թե ինչպես Սովետական Միությունը տարիներ շարունակ հետևողականորեն և հաստատակամորեն բոլոր ջանքերը գործադրում էր,*

որպեսզի համաձայնություն ձեռք բերվեր ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի հետ մասսայական ոչնչացման զենքի արգելման, միջուկային փորձարկումների անհապաղ դադարեցման վերաբերյալ։ Բայց ԱՄՆ-ը և Մեծ Բրիտանիան չարձագանքեցին Սովետական Միության առաջարկներին։

Ելնելով նրանից, որ ատոմային և ջրածնային զենքի փորձարկումների դադարեցման հարցը անհետաձգելիորեն լուծում է պահանջում, ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման առաջին սեսիան հանդես բերեց նոր խաղաղ նախաձեռնություն, որը համապատասխանում է ամբողջ առաջադեմ մարդկության իղձերին։ Սեսիան միահամուռ որոշում ընդունեց միջուկային զենքի փորձարկումները միակողմանիորեն դադարեցնելու մասին։ Այդ պատմական ակտով սեսիան միջազգային հարաբերությունների պատմության մեջ մտավ որպես կարևոր ուղենիշ խաղաղության համար, պատերազմի ուժերի դեմ պայքարող ժողովուրդների դժվարին ու փառավոր ճանապարհին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը դիմեց ԱՄՆ-ի, Անգլիայի և աշխարհի մյուս երկրների պառլամենտներին՝ կոչ անելով նրանց՝ իրենց



ամբողջ ազդեցությունը գործադրել, որպեսզի բոլոր պետությունների կողմից միջուկային զենքի փորձարկումները առհավետ դադարեցնելու հարցը իր վերջնական լուծումը գտնի ժողովուրդների իղձերին համապատասխան, դրանով իսկ ցույց տալով ելքը այն փակուղուց, որի մեջ ընկել է զինաթափման պրոբլեմը։

Սովետական Միությունը խաղաղասեր ժողովուրդների ուշադրությունը հրավիրեց Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի կառավարող շրջանների որոշման վրա՝ արևմտա-եվրոպական բանակը ատոմային զենքով զինելու մասին։ Սեսիան նշեց, որ միլիտարիզմի վերածնման սպառնալիքը նորից կախվել է Եվրոպայի վրա, բայց դեռ հնարավորություն կա կանխելու վերահաս վտանգը։ Հենց Արևմտյան Գերմանիայում և ամբողջ Եվրոպայում բողոքների հզոր ալիք է բարձրանում Բոննի միլիտարիստների անարգ որոշման դեմ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը ընդունեց ԳՖՌ-ի բունդեստագին ուղղված դիմում, ինչպես նաև պալատների նախագահներին հանձնարարեց դիմել հակահիտլերյան կոալիցիայի մասնակից պետությունների ու երկրորդ համաշխարհային պատերազմի տա-

րմներին հիտլերյան ագրեսիայից տուժած երկրների պառլամենտներին։

Այդ բոլոր փաստաթղթերում արտահայտված է սովետական ժողովրդի անսասան կամքը խաղաղության ամրապնդման և միջազգային մթնոլորտի առողջացման նկատմամբ։

Մեր սերնդին բախտ է վիճակվել ապրել և պայքարել մեծ ու պանծալի պատմական դարաշրջանում, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում, սոցիալիզմի երկրում, որտեղ չկա ոչ սոցիալական, ոչ ազգային և ոչ էլ որևէ ճնշում։ Նույնիսկ այն երկրներում, որտեղ կապիտալիզմի շղթաները դեռ թոթափված չեն, դեռևս պահպանվում է գաղութային ստրկությունը, աշխատավորները մեծ հավատով են նայում իրենց ապագային։

Մեր Սովետական Հայրենիքը վստահորեն առաջ է ընթանում մեծ Լենինի նշած ուղիով՝ կոմունիզմի ուղիով։ Բուռն կերպով զարգանում է սոցիալիստական ինդուստրիան, շեշտակի վերելք է ապրում մեր գյուղատնտեսությունը, աչքի ընկնող հաջողությունների է հասել սովետական գիտությունն ու կուլտուրան։

Իր հարազատ պարտիայի գլխավորու-



թյամբ սովետական ժողովուրդը մեր Հայրենիքը դարձրել է առաջավոր սոցիալիստական տերություն, որի հաղթանակներով հպարտանում է ամբողջ առաջադեմ մարդկությունը։

Կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակով միավորված մեր բոլոր ժողովուրդները այսուհետև նույնպես արժանավոր ներդրում կկատարեն իրենց Հայրենիքի հզորության ամրապնդման, մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ գործում։

Կեցցե՛ Մայիսի մեկը՝ աշխատավորների միջազգային համերաշխության, բոլոր երկրների բանվորների եղբայրության օրը։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՅԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Մայիսի մեկը աշխատավորների միջազգային տոնն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, *Երկեր, հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Մայիսի մեկը, *Երկեր, հատոր 8, էջ 439—444, Հայպետհրատ, 1949։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Երեք ճառ Կարմիր հրապարակում 1-ը մայիսի 1919 թվականի, *Երկեր, հատոր 29, էջ 397—401, Հայպետհրատ, 1951։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ*— «Կեցցե մայիսի մեկը», Երկեր, *հատոր 2, էջ 257—263, Հայպետհրատ, 1948։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ՝ Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 15-ի համարում։*



## 2. Մամուլի օրը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր թերթերի բնույթի մասին. *Երկեր, հատոր 28, էջ 106, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչի՞ց սկսել, *Երկեր, հատոր 5, էջ 11—25, Հայպետհրատ, 1948։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ*— Բանըղթակիցների մասին, *Երկեր, հատոր 6, էջ 303—305, Հայպետհրատ, 1948։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասուն տարին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական նստաշրջանում 1957 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

## 3. Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին նստաշրջանում, *1958 թվականի մարտի 27-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 28-ի և 29-ի համարներում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Եզրափակիչ խոսք ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին նստաշրջանում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 1-ի համարում։*

*ՕՐԵՆՔ*՝ Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին, *ընդունված ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 1-ի համարում։*

ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայում *«Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին» դեպուտատների ելույթներ, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 28-ի, 31-ի և ապրիլի 1—2-ի համարներում։*

## 4. Պայքարենք հումքի, էլեկտրաէներգիայի և օժանդակ նյութերի խնայողության համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *էջ 76—80, Հայպետհրատ, 1956։*

*Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ*— Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի հաշվետվությունը ՀԿՊ XIX համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 26-ի համարում։*

*ԲԱՆԱՁԵՎ*՝ Հայաստանի Կոմունիստական Պարտիայի XIX համագումարի, Հայաստանի Կոմպարտիայի *Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման առթիվ,*



*տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 5-ի համարում։*

Խելացիորեն օգտագործել արտադրության ռեզերվները, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 22-ի առաջնորդողը։*

## 5. Բարելավենք ցանքերի մշակությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Դիմումը *կոլտնտեսականներին, կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողներին, պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, սովետական ու գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին և բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 23-ի համարում։*

Լավագույն ժամկետում և բարձր որակով կատարել գարնանացանը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 23-ի առաջնորդողը։*

Դեպի կոլտնտեսային արտադրության նոր վերելք, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 27-ի առաջնորդողը։*

## 6. Ապահովենք սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների անթերի կատարումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչպես կազմակերպել մրցություն,







Երկեր, հատոր 26, էջ 493—506, Հայպետհրատ, 1951։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Դիմումը *կոլտնտեսականներին, կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողներին, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, սովետական ու գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին և բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 23-ի համարում։*

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 16-ի համարում։*

## 7. Սովետական Միության խաղաղասիրական մեծ նախաձեռնությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Արտաքին Գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոյի հայտարարությունը՝ ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 1-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը Սովետական Միության կողմից ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները միակողմանիորեն դադարեցնելու հարցի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 2-ի համարում։*



ՍՍՌՄ Գերագույն Սովետի դիմումները ուղղված ԱՄՆ-ի Կոնգրեսին, Մեծ Բրիտանիայի պառլամենտին, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի բունդեստագին, աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին՝ միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու հարցի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 2-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովի ուղերձները ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերին և Մեծ Բրիտանիայի պրեմիեր-մինիստր Հ. Մակմիլանին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 6-ի և 9-ի համարներում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ